Պրոլետարներ բոլոր յերկրների՛, միացե՛ք

ՀԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 16-17 (47-48)

ՀԽՍՀ ԺԿԽ հրատարակչություն—«Խորհրդ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ—1938

ՀԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ՑԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ

№ 16-17 — (47-48)



Հայկական ԽՍՀ ԺԿԽ Հրատարակչություն—
«ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1938

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



# ԽՈՐԱՊԵՍ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԵԼ ԼԵՆԻՆԻ-ՍՏԱԼԻՆԻ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

*Այսօր «Պրավդա»-ն սկսում է հրապարակել Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության պատմության համառոտ դասընթացը: ՀամԿ(բ)Կ Կենտկոմի հավանությունն ստացած այդ նշանավոր աշխատության լույս ընծայումը խոշորագույն դեպք է հանդիսանում կուսակցության գաղափարական կյանքում, մի դեպք, վորի հսկայական նշանակությունը նույնիսկ դժվար է միանգամից գնահատել: Այն վիթխարի թեորետիկական աշխատանքի հետևանքով, վոր կատարել է ՀամԿ(բ)Կ Կենտկոմի հանձնաժողովը, անձամբ ընկեր Ստալինը,— մեր կուսակցությունը, կոմերիտմիությունը, բոլոր աշխատավորներն ստացան մի գիտական աշխատանք, վորին ամենայն խո-*

րությամբ տպավորում է Լենինի-Ստալինի կուսակցության պայքարի ու հաղթանակի փառապանծ պատմությունը:

Հրատարակվող՝ ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթացը սովորական տիպի դասագիրք չի հանդիսանում: Շարադրման բացառիկ պարզ, մատչելի և պայծառ ձևի հետ գիրքը հագեցած է, ներթափանցված է խոր թեորետիկական բովանդակությամբ: ՀամԿ(բ)Կ պատմության անցյալ, անբավարար դասագրքերը սովորաբար հանդիսանում էին «ոչ թե որպես պատմություն, այլ որպես թեթև ու անհասկանալի պատմվածք՝ անցած գործերի մասին» (Ստալին): Նրանք կուսակցության պատմության իրադարձություններին ու փաստերին մարքսիստական բացատրություն չէին տալիս, ուստի և չէին համապատասխանում հիմնական խնդրին՝ օգնել կուսակցական կադրերին՝ տիրապետելու բոլշևիզմին:

Բոլորովին այլ կերպ է կառուցված Համ. Կ(բ)Կ պատմության՝ հրատարակվող համառոտ դասընթացը: Այստեղ տեսականորեն ընդհանրացված է բոլշևիկյան կուսակցության ամբողջ հսկայական պատմական



փորձը, տրված է բանվոր դասակարգի հեղափոխական պայքարի պատմության, նրա կուսակցության պատմության ամենաբարդ հարցերի իսկական գիտական, մարքսիստական բացատրությունը:

ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթացը ստալինյան կլասիկ խորությամբ, ճշգրտությամբ և պարզությամբ բաց է անում այն նորը, ինչ որ Լենինի հանճարը մտցրեց մարքսիզմի գանձարանի մեջ: Դարագլուխ կազմող լենինյան երկերի՝ «Ի՞նչ է «ժողովրդի բարեկամները», «Ի՞նչ անել», «Մի քայլ առաջ, երկու քայլ հետ», «Սոցիալ—դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական հեղափոխության մեջ» և Վլադիմիր Իլյիչի մյուս աշխատությունների անալիզը ցույց է տալիս, թե ինչպես է Լենինը կոփել բոլշևիզմի անպարտելի գաղափարական զենքը: Ընթերցողը ՀամԿ(բ)Կ պատմության առաջին իսկ գլուխներին ծանոթանալով՝ տեսնում է, թե ինչպես էր Լենինը ստեղծում մարքսիստական կուսակցության իդեոլոգիական հիմունքները Ռուսաստանում, ինչպես էին կազմվում նոր տիպի կուսակցության՝ բոլշևիկների կուսակցության

կազմակերպական և տակտիկական հիմունքները, ինչպես եր Լենինը օպորտունիստների դեմ մղված համառ պայքարով պաշտպանում մարքսիստական կուսակցության թեորետիկական հիմունքները։ ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթացում սպառիչ լիակատարությամբ և խորությամբ շարադրված է լենինյան-ստալինյան ուսմունքը կուսակցության մասին։

Լենինի հանճարեղ աշխատությունների անալիզը, ինչպես և ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթացի մյուս թեորետիկական մոմենտները հանդիսանում է ամենաարժեքավոր ավանդ՝ բոլշևիզմի իդեական գանձարանում։

Բոլշևիկները, կուսակցական և վոչ կուսակցական, ուսումնասիրելով այդ գիրքը, կստանան թեորետիկական մտքի այն անզնահատելի հարստությունը, վոր բովանդակում է Համ Կ(բ)Կ պատմության համառոտ դասընթացը։ Յուրաքանչյուր կուսակցական և վոչ կուսակցական բոլշևիկի պարտականությունն է՝ ձեռնամուխ լինել ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթացի լուրջ, ուշադիր և համառ ուսումնասիրությանը, դասընթաց, վոր անփոխարինելի ձեռնարկ է հանդիսանում բոլշևիզմին տիրապետելու գործում։



«Համ Կ(բ)Կ-ն,—կարդում ենք «Ներածությունում»,—աճել ու ամրապնդվել է բանվորական շարժման ներսում մանր բուրժուական կուսակցությունների դեմ մղած սկզբունքային պայքարում—եսերների դեմ (իսկ ավելի առաջ՝ նրանց նախորդ նարոդնիկների դեմ), մենշևիկների, անարխիստների, բոլոր գույնի բուրժուական նացիոնալիստների դեմ, իսկ կուսակցության ներսում՝ մենշևիկական, օպորտունիստական հոսանքների,— տրոցկիստների, բուխարինականների, նացիոնալ — ուկլոնիստների և հակալենինյան այլ խմբերի դեմ մղած պայքարում։

ՀամԿ(բ)Կ-ն ամրապնդվել ու կոփվել է բանվոր դասակարգի բոլոր թշնամիների, աշխատավորների բոլոր թշնամիների դեմ մղված հեղափոխական պայքարում — կալվածատերերի, կապիտալիստների, կուլակների, վնասարարների, լրտեսների, կապիտալիստական շրջապատի բոլոր վարձկանների դեմ մղած պայքարում։

ՀամԿ(բ)Կ պատմությունը յերեք հեղափոխությունների պատմություն է— 1905

թվի բուրժուա- դեմոկրատական հեղափոխության, 1917 թվի փետրվարի բուրժուա—դեմոկրատական հեղափոխության և 1917 թվի հոկտեմբերի սոցիալիստական հեղափոխության:

ՀամԿ(բ)Կ պատմությունը ցարիզմի տապալման, կալվածատերերի և կապիտալիստների իշխանության տապալման պատմությունն ե, ոտարերկրյա զինված ինտերվենցիայի ջախջախման պատմությունը՝ քաղաքացիական պատերազմի ժամանակ, խորհրդային պետության և սոցիալիստական հասարակության կառուցման պատմությունը՝ մեր յերկրում:

ՀամԿ(բ)Կ պատմության ուսումնասիրությունը մեր յերկրի բանվորներին և գյուղացիներին հարստացնում ե սոցիալիզմի համար մղված պայքարի փորձով:

Համ Կ(բ)Կ պատմության ուսումնասիրությունը, մարքսիզմի-լենինիզմի բոլոր թշնամիների, աշխատավորների բոլոր թշնամիների դեմ մեր կուսակցության մղած պայքարի պատմության ուսումնասիրությունը ոգնում ե տիրապետելու բոլշևիզմին, բարձրացնելու քաղաքական զգոնությունը:



Բոլշևիկյան կուսակցության հերոսական պատմության ուսումնասիրությունը զինում ե հասարակական զարգացման և քաղաքական պայքարի որենքների ճանաչումով, հեղափոխության շարժիչ ուժերի ճանաչումով:

ՀամԿ(բ)Կ պատմության ուսումնասիրությունն ամրապնդում ե Լենինի-Ստալինի կուսակցության մեծ գործի վերջնական հաղթանակի հավատը ամբողջ աշխարհում, կոմունիզմի հաղթանակի հավատը»:

Բոլշևիկյան կուսակցությունը, նրա առաջնորդները — Լենինը և Ստալինը միշտ ել կարևորագույն նշանակություն են տվել հեղափոխական թեորիային: Հեղափոխական թեորիան բոլոր յերկրների բանվորական շարժման փորձն ե՝ իր ընդհանուր ձևով վերցրած: Բոլշևիկյան կուսակցության մոտ, նրա ծագման հենց սկզբից, թեորիան միշտ ել անխզելիորեն կապված ե յեղել հեղափոխական պրակտիկայի հետ, բոլշևիկների մոտ խոսքը յերբեք չի բաժանվել գործից:

«...Թեորիան առարկայազուրկ ե դառնում, յեթե նա չի կապվում հեղափոխական պրակտիկայի հետ, ճիշտ այնպես,

ինչպես պրակտիկան էլ կույր է դառնում, եթե նա չի լուսավորում իր ճանապարհը հեղափոխական թեորիայով: Բայց թեորիան կարող է բանվորական շարժման մեծագույն ուժը դառնալ, եթե նա կազմավորվում է հեղափոխական պրակտիկայի հետ անքակտելիորեն կապակցված կերպով, որովհետև նա, և միայն նա, կարող է շարժմանը տալ վստահություն, կողմնորոշման ուժ և շրջապատող իրադարձությունների ներքին կապի ըմբռնում, որովհետև նա՛, և միայն նա՛ կարող է օգնել պրակտիկային հասկանալու ո՛չ միայն այն, թե ինչպես և դեպի ո՛ւր են շարժվում դասակարգերը ներկայումս, այլև այն, թե ինչպես և դեպի ո՛ւր պետք է շարժվեն նրանք ամենամոտիկ ապագայում» (Ստալին).

Դրա համար էլ Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) Կուսակցության կանոնադրությունը կուսակցության յուրաքանչյուր անդամից պահանջում է «անդուլ աշխատել իր գաղափարական զինվածությունը բարձրացնելու, մարքսիզմ-լենինիզմի հիմունքները, կուսակցության կարևորագույն քաղաքական ու կազմակեր-



պական որոշումները յուրացնելու համար և բացատրել դրանք անկուսակցական մասսաներին»:

Մեր երկրում իրականացել, արդարացվել են Մարքսի հանճարեղ խոսքերն այն մասին, որ «թեորիան դառնում է նյութական ուժ, հենց որ նա տիրապետում է մասսաներին»: Մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության լենինյան—ստալինյան մեծ գաղափարով տոգորված ՍՍՀՄ աշխատավոր մասսաները Լենինի-Ստալինի կուսակցության ղեկավարությամբ իրենց հերոսական անձնազոհական աշխատանքով արդեն հիմնականում կառուցել են սոցիալիստական հասարակությունը:

Բայց մեր պայքարը դեռ հեռու չէ ավարտված լինելուց: Սոցիալիզմի վերջնական հաղթանակի համար մեր առաջ դեռ վճռական մարտեր են կանգնած կապիտալիստական շրջապատման և առաջին հերթին՝ պատերազմի Փաշիստական հրձիգների դեմ: Դեռևս չի ավարտված բոլշևիկյան կուսակցության՝ ՍՍՀՄ աշխատավորների առաջավոր ջոկատի պայքարը սոցիալիստական կարգերի ամրապնդման ու զարգացման համար, կապիտալիզմի մնացորդ-

ների էկոնոմիկայում և մարդկանց գիտակցության մեջ վերջնականապես հաղթահարելու համար: Մեր առջև հսկայական ու յերկարատև խնդիր է դրված — սոցիալիստական հասարակությունը աստիճանաբար վերափոխել կոմունիստականի, հասնել կոմունիզմի բարձրագույն փուլին, յերբ իրականանալու յե «յուրաքանչյուրից՝ ըստ նրա ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ նրա պահանջմունքների» ըսկըզբունքը:

Այս մեծ խնդիրների կատարման ուղղությամբ հաջողությամբ պայքարելու համար բոլոր բոլշևիկները, կուսակցական և ոչ կուսակցական, պետք է անդադրում բարձրացնեն իրենց գաղափարական զինվածությունը:

Սակայն, հասկանալի յե, առաջին հերթին այդ վերաբերում է կուսակցական կադրերին: Հայտնի յե, որ մեր կուսակցական կադրերի թեորետիկական պատրաստությունը թույլ է: Քաղաքական պատրաստության թուլությունը, բոլշևիկյան կոփվածքի թուլությունը, քաղաքական անհոգությունն օգտագործում էին ժողովրդի դիմակավորված թշնամիները և տրոցկիս-



տական — բուխարինական և այլ յերկերեսանիները: Հարկավոր է, վերջապես, սկսել մեր կուսակցական կադրերի տեսական թուլության լիկվիդացիան:

Այժմ, յերբ ստեղծված է այնպիսի հզոր իդեական զենք, ինչպիսին է ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթացը, որ հավանություն է ստացել կուսակցության Կենտրոնական Կոմիտեյի կողմից, բոլոր հնարավորությունները կան արագորեն առաջ շարժելու կուսակցական կադրերի և ամբողջ կուսակցության Մարքս-Լենինյան գաղափարական կոփվածքի գործը:

ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթացը պետք է դրված լինի մեր կուսակցական լուսավորական ամբողջ աշխատանքի կենտրոնում: Այն պետք է ուսումնասիրի և յուրացնի յուրաքանչյուր կուսակցական ակտիվիստ, պետք է ուսումնասիրի կուսակցության յուրաքանչյուր անդամ, յուրաքանչյուր կոմյերիտական: Կասկածից դուրս է, որ անկուսակցական աշխատավորների լայն մասսաներն ևս աշխույժ հետաքրքրություն ցույց կտան դեպի իրենց հարազատ ու մոտիկ բոլշևիկյան կուսակցության պատմությունը, կուսակցություն,

*վորը ԽՍՀՄ աշխատավորներին հասցրել է սոցիալիզմի հաղթանակին:*

*Համկ(բ)Կ իսկական գիտական պատմության լույս ընծայումը համաշխարհային նշանակություն ունեցող դեպք է: Արտա-սահմանի մեր յեղբայրներն ու ընկերները այդ գիրքը կուսումնասիրեն վորպես Համ. Կ(բ)Կ հսկայական պատմական փորձի ընդ-հանրացում, վորպես հեղափոխական գոր-ծողության ձեռնարկ:*

*Համ Կ(բ)Կ պատմության դասընթացի ուսումնասիրությունն ապահովելը բոլոր կուսակցական կազմակերպությունների կարեւորագույն խնդիրն է: Հարկավոր է* բոլոր *կոմունիստներին ծանոթացնել այդ սքանչելի գրքին և սկսել նրա լուրջ, ուշա-դիր, խոր ուսումնասիրությունը:*

(«ՊՐԱՎԴԱ»-ի սեպտեմբերի 9-ի առաջնորդողը).



# ՀԱՐՎԱԾՈՎ ԿՊԱՏԱՍԽԱՆԵՆՔ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՀՐՁԻԳՆԵՐԻ ՀԱՐՎԱԾԻՆ

## ՄԵՐ ՀՈՂԸ ՎՈՉ ՎՈՔԻ ՉԵՆՔ ՏԱ

*Ի. ՊԱՊԱՆԻՆ.*
ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի դեպուտատ, Խորհրդային Միու-թյան հերոս

*Ցերեկս արգահատելի սամուրայներն ի-րենց գիշատիչ թաթերը խոթեցին մեր հա-րազատ խորհրդային հողը: Մեր հզոր Կարմիր Բանակը խորտակիչ հարվածով պատասխանեց ճապոնական ռազմամոլների հարվածին:*

*Քաղաքացիական պատերազմի տարինե-րին, յերբ ճապոնական ինտերվենտները հարձակվեցին խորհրդային Հեռավոր Արե-ւելքի վրա, մեր Կարմիր Բանակը հերոսա-բար ջախջախեց ճապոնական իմպերիա-լիստներին, ավելեց— սրբեց նրանց մեր խորհրդային տերիտորիայից:*

Այն ժամանակվանից մեր խորհրդային հայրենիքը դարձել է ավելի ու ավելի ամուր ու ավելի ուժեղ: 1929 թվականին ճապոնական պրովոկատորները նույնպես առիթ ունեցան համոզվելու մեր Կարմիր Բանակի և մեր Կարմիր Նավատորմի ուժի ու հզորության մասին: Ճապոնական վարձկաններին այն ժամանակ արագ կերպով ջախջախեցին մեր կարմիր մարտիկները: Վոչ վոքի չի հաջողվի զավթել մեր հարազատ խորհրդային հողից թեկուզ մի թիզ:

Մենք կողմնակից ենք խաղաղության: Մեր խորհրդային կառավարությունն աննահանջ կերպով կիրառել և կիրառում է խաղաղության քաղաքականություն: Բայց նրանց համար, ովքեր մեր խորհրդային տերիտորիան կներխուժեն, չկա և չի լինի վոչ մի խնայում: Թշնամին կվոչնչացվի մեր կողմից:

Ջավին անցկացրած ճապոնական ֆաշիստական ռազմամոլները և նրանց անարգ գործակալությունը— տրոցկիստական լըրտեսական բանդան—չի կարող մեր անպարտելի խորհրդային ժողովրդից խլել նրա սոցիալիստական, մեծ նվաճումները: Խոր-



հրդային ժողովուրդը վոչ վոքի թույլ չի տա իր վզին դնել կապիտալի լուծը:

Մեր աչալուրջ խորհրդային հետախուզությունն ընկեր Յեժովի ղեկավարությամբ տակն ու վրա արեց և վոչնչացրեց տրոցկիստական-բուխարինյան լրտեսական բները: Յեթե քողարկված լրտեսներից ու դիվերսանտներից մեկն ու մեկը մնացել է դեռևս առանց մերկացվելու, նա կմերկացվի այսօր-վաղը և կջնջվի աշխարհի յերեսից:

Մեր բոլշևիկյան կուսակցության և խորհրդային կառավարության առաջին իսկ կանչին մեր ամբողջ հզոր ժողովուրդը վոտքի կկանգնի ի պաշտպանություն իր սոցիալիստական հայրենիքի: Մենք, խորհրդային քաղաքացիներս, ստալինյան յերկրի ջերմ հայրենասերներս, մենք սիրում ենք մեր սոցիալիստական հայրենիքը, մենք անձնուրաց կերպով նվիրված ենք մեր բոլշևիկյան կուսակցությանը, մեր մեծ առաջնորդին, թանկագին, սիրելի Ստալինին:

Սոցիալիզմի ծաղկումը մեր յերկրում՝ յերջանիկ ու բերկրալի կյանքի անծայրածիր հորիզոններ բացեց ամբողջ մարդկության համար:

Ֆաշիստական խժերը չեն կարող հետ շրջել պատմության անիվը։
Մենք կհաղթենք։

## ԿԱՎԼԵՆՔ-ԿՍՐԲԵՆՔ ԱՐՅՈՒՆՌՈՒՇՏ ՍԱՄՈՒՐԱՅՆԵՐԻՆ

Ե. ԿՐԵՆԿԵԼ
ԽՍՀՄ Գերագույն խորհրդի դեպուտատ, Խորհրդային Միության հերոս

Խորհրդային ռադիոն մեր ամբողջ երկրում տարածեց ճապոնական ռազմամոլների կողմից մեր Հեռավոր Արևելյան սահմանի վրա կատարված պրովոկացիայի լուրը։ Խորհրդային ժողովուրդն անչափ վրդովված է մեր խորհրդային սահմանների վրա ճապոնական ֆաշիստների կատարած ամենալկտի ավանտյուրային վոտնձգության համար։ Հեռավոր Արևելյան բանակի քաջարի մարտիկները ջարդ ու փշուր արին արյունառուշտ սամուրայներին ու այսուհետև էլ ավելի խորտակիչ հակահարված կհասցնեն։

Ճապոնական ռազմամոլների համար ան-



պատիժ չանցավ խորհրդային տերիտորիայի վրա հանցավոր հարձակում կատարելը։ Մեր հզոր խորհրդային ժողովուրդը և նրա պանծալի Կարմիր Բանակն անխնայորեն ճզմեցին ֆաշիստական սողուններին, վորոնք իր խոզի դունչը փորձեց խոթել մեր խորհրդային բանջարանոցը։ Թող իմանան թշնամին, վոր աշխարհում չկա ավելի ուժեղ բանակ, քան մեր Կարմիր Բանակը։ Մենք ճապոնական բանդիտներին կվոչնչացնենք այն տերիտորիայում, վորտեղից նրանք ելել են, յեթե նրանք նորից փորձեն խախտել խորհրդային սահմանները։

Մեր սոցիալիստական հայրենիքի պաշտպանության գործի համար առաջին իսկ կանչին վոտքի կկանգնի մեր մեծ յերկրի յուրաքանչյուր քաղաքացի։ Մահ, խորհրդային տերիտորիայի վրա վոտնձգություններ կատարող բանդիտներին։

Մենք, խորհրդային մարտիկս, բոլորս ինչպես մեկ մարդ համախմբված ենք մեր կուսակցության շուրջը, մեր սիրելի առաջնորդ ընկեր Ստալինի շուրջը։

Խորհրդային ժողովուրդը կավլի—կսրբի գազանացած թշնամուն։

# ՄԵԶ ՀԱՆԿԱՐԾԱԿԻ ՉԵՆ ԲԵՐԻ

Ն. ԲՈՒՇՄԱՆՈՎ.
Շքանշանակիր,
№. . զորամասի մայոր

Խորհրդային յուրաքանչյուր քաղաքացու սիրտը հպարտությամբ լցվեց այն հերոսական ջախջախիչ հակահարվածի մասին ստացված հաղորդագրությունները, վորը Հեռավոր Արևելյան Կարմրադրոշ Ֆրոնտի զորամասերը հասցնում են չափին անցկացված ճապոնական սամուրայներին:

Վրդովմունքից ու զայրույթից արյունները յեռ ե գալիս ճապոնական բոլոր իմպերիալիստների լկտի յելույթի պատճառով, վորոնք փորձում են վիժեցնել մեծ ժողովրդի խաղաղ, սոցիալիստական աշխատանքը:

Ըստ երևույթին ճապոնական սամուրայները սկսում են մոռանալ տարրական այն դասերը, վոր նրանք 1918—1922 թվականներին ստացան Հեռավոր Արևելյան պարտիզաններից և Կարմիր Բանակից: Նրանք մոռացել են Զուլինովկան, Անդրեյևկան, վորտեղ ճապոնական շատ զորա-



մասեր իրենց գերեզմանը գտան:

Մենք կարող ենք հիշեցնել ճապոնական ագրեսորներին, թե ինչպես մենք ջարդ ու փշուր արինք նրանց հորդաները Չիտայի մոտ, Բլագովեշչենսկի մոտ, Խաբարովսկում և Սպասսկում:

Թող ճապոնական փաշիստները չմոռանան մեր քաջարի Հեռավոր Արևելյան Կարմրադրոշ հատուկ Կարմիր Բանակի— 1929 թ. հուժկու հարվածները:

Ճապոնական սամուրայներին առաջին անգամը չե, վոր մենք հարվածում ենք, մենք նրանց հարվածել ենք քաղաքացիական պատերազմի տարիներին, մենք նրանց հարվածում ենք նաև այսօր, Խասան լճի մոտ, մենք նրանց հարվածելու յենք և վաղը:

Յեվ յերբ մեր Ստալինը մեզ կանչի, մենք Կարմիր Բանակի հրամանատարներս ու մարտիկներս, խորհրդային ամբողջ ժողովրդի հետ միասին, Խորհրդային Միության սիրելի մարշալ Կ. Յե. Վորոշիլովի ղեկավարությամբ, վորպես խորտակիչ լավա կնետվենք թշնամու վրա և նրան կվոչնչացնենք այն տերիտորիայում, վորտեղից նա յեկել ե:

# ՊԱՏԵՐԱԶՄԻ ՀՐՁԻԳՆԵՐԸ ՍԽԱԼՎԵՑԻՆ

Վ. ՄՈԶԱԼՈՎ
Շքանշանակիր,
№... զորամասի կապիտան

Յես չզարմացա, յերբ կարդացի Հեռավոր Արևելքում տեղի ունեցած նոր ընդհարումների վերաբերյալ հաղորդագրությունը: Պրովոկացիոն ելույթները վաղուց արդեն ճապոնական սամուրայների սիրեցյալ մեթոդն են դարձել: Յեվ Խասան լճի մոտ տեղի ունեցած վերջին դեպքերը մինչև անգամ ևս ցույց տվին, որ ճապոնական սամուրայները յերազում են Խորհրդային Հեռավոր Արևելքը գրավելու մասին:

Ցնորամիտ յերազներ: Դրանք յերբեք չեն իրագործվի:

Յես վերհիշում եմ 1929 թվականը, յերբ յես ծառայում եյի Հեռավոր Արևելքի բանակում: Այն ժամանակ սպիտակ-չինական գեներալները, համաշխարհային բուրժուազիայի թելադրանքով փորձեցին շոշափել մեր ուժերը: Յես հիշում եմ, թե ինչպես անձնվիրաբար մեր մարտիկները կռվում եյին իրենց հայրենիքի պատվի համար:



Կարմիր Բանակի զորամասերը գործով ապացուցեցին իրենց նվիրվածությունը խորհրդային իշխանությանը—թշնամին ջարդուփշուր յեղավ:

Ինձ համար միանգամայն պարզ է, որ ճապոնական իմպերիալիստները գործում են գերմանական ֆաշիստների հետ համատեղ: Պարզ է, որ գերմանական ֆաշիզմը յերազում է մեր ուժերի մի մասն Արևմուտքից քաշել Արևելք: Բայց մեր յերկիրն այնքան հզոր է, որ մեր ուժերը բավական են և Արևելքի և Արևմուտքի համար: Տեխնիկան ու մարդիկ էլ բավական են: Ամբողջ խորհրդային ժողովուրդը ոտքի կկանգնի պաշտպանելու իր չքնաղ հայրենիքը և կկարողանա ջախջախել թշնամուն, որտեղից էլ թեկուզ նա հայտնվի: Պատերազմի հրձիգները կջախջախվեն:

Համաշխարհային ֆաշիզմը մի՛ անգամ ևս ուզում էր փորձել մեր ուժը, մեր նյարդերի ամրությունը: Մեր նյարդերն ամուր են: Մեր Կարմիր Բանակի ուժերն անպարտելի յեն:

*ՄԵՆՔ ԿՈՂՄՆԱԿԻՑ ԵՆՔ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՅԵՎ ՊԱՇՏՊԱՆՈՒՄ ԵՆՔ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԳՈՐԾԸ։ ԲԱՅՑ ՄԵՆՔ ՍՊԱՌՆԱԼԻՔՆԵՐԻՑ ՉԵՆՔ ՎԱԽԵՆՈՒՄ ՅԵՎ ՊԱՏՐԱՍՏ ԵՆՔ ՀԱՐՎԱԾՈՎ ՊԱՏԱՍԽԱՆԵԼՈՒ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՀՐՁԻԳՆԵՐԻ ՀԱՐՎԱԾԻՆ։*

*Ի. ՍՏԱԼԻՆ*

**Վ. ԱՎԻԼՈՎ**

# ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ ՉԻՆԱՍՏԱՆՈՒՄ

Չին— ճապոնական պատերազմը թևակոխեց իր գոյության 2-րդ տարին։ Այսպես կոչված «Լյուկոուցյաոյան միջադեպի» համազարկերը վերածվեցին մեծ ու երկարատև պատերազմի, որի հետևանքով երկու կողմից էլ արդեն հարյուր հազարավոր սպանվածներ ու վիրավորներ են հաշվվում։ Ճապոնացի զինվորական համազգեստ հագած հարյուր հազարավոր գյուղացիներ ու բանվորներ իրենց կյանքը կորցրին ճապոնական կապիտալիստների ու կալվածատերերի շահերի համար։ Ճապոնական միլիոնավոր ընտանիքներ մնացել են կղզիներում առանց իրենց կերակրողների, որոնք կամ ընկել են ճակատամարտի դաշտերում

կամ չարունակում են կատարել ճապո-
նական բուրժուազիայի հափշտակողական
պլանները ցամաքում: Յերկու կող-
մերի բնակչությունն էլ մասնակցություն
է ցույց տալիս պատերազմի կարիքների
սպասարկմանը: Մի կողմը — չինական
հայրենասերները— հպարտ՝ հայրենիքի
պաշտպանների պատվավոր դերի գիտակ-
ցությամբ, խանդավառությամբ ու սիրով
են ծառայում իրենց հայրենիքին: Մյուս
կողմը— ճապոնական գյուղացիները և
բանվորները— հարկադրաբար են այդ
անում, ճզմված լինելով ճապոնական
ռազմամոլների ու ժանդարմերիայի կր-
ունկների տակ և թմրեցված լինելով շո-
վինիստական պրոպագանդայի թույնով:
Չինական 450 միլիոնանոց ժողովուրդը
պատերազմի մեկ տարում ապացուցեց,
վոր նրան չի կարող ընկճել ոտարերկրյա
ինտերվենտների և վոչ մի ուժ: Ճապո-
նական գլխավոր շտաբը կարող է հա-
վաստիանալ, վոր տարեկան բալանսը
ստացվում է ամենևին էլ վոչ իր օգտին:
Ճապոնական իմպերիալիզմը հարձակման
պրովոկացիա սարքելով Լյուկոուցյաոյի
մոտ հույս ուներ հաղթական յերթ կատա-



րել Չինաստանի դաշտերում: Պատերազ-
մական մեկ տարին բոլորովին այլ ար-
դյունքներ տվեց: Պատերազմի առաջին
շրջանում ճապոնական զորքերը մեծ լար-
վածության գնով կարողացան արագորեն
առաջ շարժվել և գրավել Չինաստանից
բավական ընդարձակ տերիտորիա հյու-
սիսում: Տյանցզին— Բեյպին— Հայյուան
շրջանում և կենտրոնական մասում—
Շանհայ— Նանկինի շրջանում: Սակայն
ճապոնացիները չկարողացան ջախջախել
չինական բանակի ուժերը և նույնիսկ
ավելի կամ պակաս չափով չկարողացան
լուրջ պարտություն մատնել նրան:
Չինական հրամանատարությունը յեռան-
դուն դիմադրություն ցույց տալով հա-
կառակորդի հարձակողական գործողու-
թյուններին կարողացավ պահպանել իր
զորքերի կենդանի ու հարվածային ուժը:
Չինաստանը ստիպված էր տերիտորիալ
զոհեր կրել, նպատակ ունենալով ժամա-
նակ շահել իր ուժերի շինարարության և
սպառազինման համար, մարտունակ բա-
նակ ստեղծելու համար, վորը կարողանա
դիմադրել ագրեսորի տեխնիկապես գերա-
զանց ուժերին:

Չինական բանակը պատերազմի մեջ մտավ տեխնիկապես թույլ: Ճապոնական ինքնաթիռների, տանկերի և հրետանու դեմ չինական զորքերը պատերազմի առաջին շրջանում կարող եյին դուրս բերել սպառազինություն միայն հնացած տիպի և այն էլ շատ սահմանափակ քանակով: Չինական բանակի շարքերում դեռևս գործում եյին այնպիսի դավաճաններ ու մատնիչներ, ինչպես Խանֆուցյուն և ուրիշները: Չինական հրամանատարական կազմը չունենալով մեծ պատերազմի փորձ և տեխնիկապես հագեցված հակառակորդի դեմ գործողություններ կատարելու փորձ, դեռևս չէր կարողանում հարձակողական գործողություններ կազմակերպել ու կիրառել: Չինական ավիացիայի ոդաչուական կազմը դեռևս չէր յուրացրել նոր մարտական տեխնիկան: Ժողովրդական հեղափոխական ութերորդ բանակի հիանալի հաղթությունները և նրա տակտիկան դեռևս չեյին ընդունվել վորպես Չինաստանի տերիտորիան ներխուժած ինտերվենտներին հակահարված տալու գործի հմուտ կազմակերպման փայլուն օրինակ: Նանկինի գրավումով 1937 թվի դեկ-



տեմբերին ըստ էության ավարտվում է պատերազմի այդ շրջանը:

Արդեն այդ ժամանակ Չինաստանը ամբողջ աշխարհին ցույց տվեց, վոր ընթացիկ պատերազմը Մանջուրիայի, Ժեխեյի և Չախարի գավառներում կատարված ճապոնական «հաղթական» յերթերի կրկնությունը չէ: 1937 թվին պատերազմի մեջ ընդգրկված ճապոնական զորքերի թիվը շատ ավելի գերազանցում էր մանջուրական ժամանակաշրջանի ճապոնական ինտերվենցիոնիստական ուժերին: Պահանջվեց մոբիլիզացիայի յենթարկել ճապոնական ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը, վորպեսզի կարելի լինի բավարարել ռազմաճակատի կարիքները: Այդ անմիջապես առաջ բերեց էլ ավելի մեծ ճնշում աշխատավոր մասսաների վրա: Նույնիսկ ճապոնական բուրժուազիայի մի մասը—առանձնապես մանր ու միջին ձեռնարկությունների տերերը—հարկադրված եյին կրել պատերազմի սպասարկման ծանրությունները: Չինաստանի պատերազմական դաշտերում ընկած տասնյակ հազարավոր դիերը ծանր տպավորություն գործեցին ճապոնական բնակչության լայն շրջանների վրա: Չինաստանի դեմ մղվող

պատերազմի ժողովրդականությունը ընկնում էր կատաստրոֆիկ արագությամբ։

Մյուս կողմից, չինական կառավարությունը կիրառեց մի շարք մասսայական կազմակերպչական ձեռնարկումներ, որոնք զգալիորեն բարձրացրին չինական բանակի մարտունակությունը։ Վերակազմության յենթարկվեց յերկրի տնտեսության կառավարումը՝ ազատագրական պատերազմի կարիքներին այն հարմարեցնելու նպատակով։ Չինաստանի Կոմունիստական կուսակցության ու Գոմինդանի միջև միասնական ճակատ կազմելու մասին համաձայնություն կնքելն արդեն սկսեց չինական ժողովրդին և բանակին համախմբել ագրեսորի դեմ մղվող պայքարում։ Չինական ժողովրդի մարտական ոգին աճում էր օրեց-օր։ Բարելավվեց չինական բանակի ընդհանուր ղեկավարությունը։ Գնդակահարվեցին ժողովրդի դավաճանները Շանդունի պրովինցիայի զորքերի նախկին հրամանատար՝ գեներալ Խան—Ֆու—Ցյուն, Յան Սի— շանի զորքերի բանակի հրամանատար գեներալ՝ Լի—Ֆուին, բրիգադի մեկ հրամանատար և յերկու գնդապետներ։ Ձերբակալվեցին և դատի տրվեցին դիվիզիայի վեց հրա-



մանատարներ, բրիգադի յերեք հրամանատարներ և չորս գնդապետներ։ Պաշտոնից հեռացվեցին Խանչժոուի ճակատի հրամանատար— գեներալ Չժան Ֆա— կույը, դիվիզիայի 6 հրամանատարներ, բրիգադի յերկու հրամանատարներ և 6 գնդապետներ։

Հրամանատարական կազմի այդ զտումը առաջ բերեց բանակի ու բնակչության լայն խավերի հավանությունն ու աջակցությունը։ Բանակի հրամանատարական կազմը հավաստիացրեց գեներալիսիմուս (գերսպարապետ) Չան Կայ—շիին, որ դավաճանների մահապատիժը բարձրացնում է բանակի մարտական ոգին և նրան մոբիլիզացիայի յե յենթարկում պայքարելու մինչև Չինաստանի լիակատար հաղթանակը։

Չինական կառավարության արտասահմանում գնած նոր սպառնազինությունը տեխնիկապես ուժեղացրեց չինական բանակը։

Ճապոնական զորքերը ընդարձակ տերիտորիաներ գրավելով իրենց ուժերը ցիր ու ցան արին հյուսիսային ու կենտրոնական Չինաստանի հսկայական տարածություններում։ Այդ հանգամանքն անդրադարձավ

ճապոնական բանակի հարվածային ուժի վրա: Նրա հարձակողական թափը կասեցվեց չինական բանակի աճող ուժով, բանակ, վորը գործում է պարտիզանական բազմաթիվ ջոկատների աջակցությամբ, վորոնք ծնունդ են առել ճապոնացիների կողմից օկուպացիայի յենթարկված տերիտորիայի բոլոր անկյուններում:

Ժողովրդական հեղափոխական 8-րդ բանակի պարտիզանական գործողությունների մարտական նախաձեռնությունը լայն արձագանք գտավ չին ժողովրդի բոլոր խավերում: 8-րդ բանակի կողմից ղեկավարվող ջոկատները հավասարապես ինչպես և տարերայնորեն ծնունդ առնող պարտիզանական ջոկատները զգալի հարվածներ են հասցնում ճապոնական թիկունքին, հարկադրում են ճապոնական հրամանատարությանը ռազմաճակատից ավելի ու ավելի մեծ ուժեր վերցնել իր կոմունիկացիաների պահպանման համար:

Այդ ամենը հասցրեց այն բանին, վոր պատերազմի 2-րդ շրջանում ճապոնական բանակն արդեն չեր կարողանում իրեն պահել առաջին շրջանի հարձակման տեմպերի մակարդակի վրա և ըստ եյության



հարկադրված եր «միենույն տեղում դոփել»:

Չինական զորքերը 1938 թ. հունվարին ճապոնական հարձակումը կանգնեցնելով, համարյա բոլոր ճակատներում ակտիվ հարձակողական գործողությունների յեն անցնում Շանդունի նահանգում և կենտրոնական ճակատում Ուխու Խանչժոու շըրջանում:

Ճապոնական հրամանատարությունը հյուսիսային (Տյանցզին-Պուկոու ուղղություն) և կենտրոնական (Շանհայ Նանկինյան ուղղություն) ճակատների միացման պլան մշակելով իր գործողությունների ծանրության կենտրոնը փոխադրում է Շանդունի նահանգը, մնացած ճակատներում ոժանդակ գործողություններ կատարելով, վորոնց նպատակն է ապահովել իր հիմնական հարվածը:

Ճապոնական հրամանատարության այդ պլանի հետևանքով հիմնական ճակատամարտերը պատերազմի յերկրորդ շրջանում տեղի ունեցան Սյուչժոու քաղաքի շուրջը, Տյանցզին-Պուկոույի և Լունխայի յերկաթուղայինների միացման կետում:

Չինական հրամանատարությունը նույն-

պես իր գլխավոր հարվածի ուղղությունը նշում է Շանդունի նահանգում, Տյանցզին-Պուկոու ուղղության վրա: Չինական զորքերի յեռանդուն գործողությունների շնորհիվ Սյուչժոուի համար մղվող կռիվը ձգձգվեց 5 ամիս:

Այդ ժամանակաշրջանում չինական զորքերը ճապոնական բանակին լուրջ պարտություն են մատնում Տայերչժուանի մոտ:

Տայերչժուանի մոտ տեղի ունեցած ճակատամարտը-դա չինական բանակի առաջին խոշոր հաղթությունն է ընթացիկ պատերազմում: Այդ հաղթությամբ չինական բանակն ապացուցեց, վոր նա կարող է հարվածել սպառազինության բոլոր նորագույն միջոցներով զինված հակառակորդին: Տայերչժուանի մոտ տարած հաղթությունը ջերմորեն ընդունվեց չինական ժողովրդի կողմից, վորը հազարավոր հեռագրերով ու գրություններով վողջունեց իր հայրենիքի պաշտպաններին:

Ճապոնական զորքերին Սյուչժոուն գրավել հաջողվեց յերկրի բոլոր ուժերը մեծ լարվածության հասցնելու և կղզիներից փոխադրված նոր ռեզերվները մարտի մեջ մտցնելու շնորհիվ միայն: Յեվ նորից հինգ ամիս տևող լարված ջանքերի և մեծ կո-



րուստների շնորհիվ միայն ճապոնական բանակին հաջողվեց Սյուչժոու տերիտորիայի գրավումը: Ճապոնացիներին չհաջողվեց չինական զորքերի Սյուչժոույան խումբը ջախջախել: Չինական բանակը Սյուչժոուի մոտ կարողացավ սպառնող շրջապատումից դուրս բերել իր գլխավոր ուժերը և լիովին պահպանել նրանց մարտունակությունը: Ինտերվենտները նորից դեմ առ դեմ կանգնեցին չինական մարտունակ բանակին և Սյուչժոուի տակ սկսված պատերազմը մեկհարվածով վերջացնելու նրանց հույսերը կրախի յենթարկվեցին:

Դեռ ավելին. ճապոնացիների թիկունքում մնացած չինական զորքերի բավականին ուժեղ մի խումբ անցավ պարտիզանական գործողությունների և կազմակերպում է ճապոնական բանակի կողմից կուպացիայի յենթարկված տերիտորիայի բնակչությունը ինտերվենտների դեմ կռվելու համար: Ճապոնացիները Սյուչժոուն գրավելով և իրենց ուժերը կենտրոնացնելով Հանկոուի ուղղության վրա— սկսվում է պատերազմի յերկրորդ շրջանը:

Պատերազմի յերկրորդ շրջանում նույնպես ճապոնացիները բացի համեմա-

տաքար մի փոքր կտոր տերիտորիայից (շատ ու շատ անգամ ավելի փոքր, քան առաջին շրջանում), վոչինչ ձեռք չբերին:

Ճապոնական բանակի նոր և ավելի մեծ լրացումները մայր ցամաքում ճապոնական էկոնոմիկայի ու ֆինանսների և ավելի մեծ լարումը Ճապոնիայում ստեղծում են չափազանց ծանր դրություն: Ճապոնական իմպերիալիստները բնակչության նյութական միջոցների ծախսման խիստ էկոնոմիա հայտարարելով իրենց բոլոր ռեսուրսները մոբիլիզացիայի յեն յենթարկում պատերազմը շարունակելու համար: Այդ չի կարող Ճապոնիայի ժողովրդական տնտեսությանը չբերել տնտեսական ծանր ճգնաժամ և աշխատավոր մասսաների ել ավելի մեծ ճընշում: Ճապոնական ժողովրդի համար թալանչիական ծանր պատերազմը դադարեցնելու ուղին ավելի ու ավելի բարձր եր հնչում ձայները: Ճապոնացի զինվորների իրենց ընտանիքներին գրած հազարավոր նամակները, վոր բռնվել են չինական զորքերի կողմից, խոսում են այն մասին, վոր զինվորական մասսաները հոգնել են պատերազմից, վոր նրանք չեն ուզում կռվել: Ճապոնական բանակի քաղաքական բարո-



յական վիճակը օր օրի վատթարանում է: Բուն Ճապոնիայի մարդկային սահմանափակ ռեսուրսները ճապոնական հրամանատարությանը հարկադրում են բռնությամբ իր բանակի մեջ քաշել Մանջուրիայի, Կորեիայի և Ֆորմոզա կղզու բնակչությանը: Այդ նոր լրացումները վորոնց տեղերում արտահայտվում է բացահայտ սաբոտաժով և ապստամբություններ բարձրացնելով, վորը վորևե չափով չի նպաստում ճապոնական բանակի մարտունակության բարձրացմանը: Չինական ավիացիայի Ֆորմոզիայի և Ճապոնիայի հարավային կղզիների վրա կատարած փայլուն թռիչքները ցնցիչ տպավորություն գործեցին ճապոնական բնակչության լայն շրջանների վրա, խորտակելով այն առասպելը, թե Ճապոնիան անհասանելի յե: Այս բոլորը միասին վերցրած չափազանց դժվարացնում է ճապոնական իմպերիալիստների նվաճողական պլանների գործադրումը:

Հանկոուի ուղղությամբ կատարվող ճապոնական հարձակումներին ավելի դաժան դիմադրություն են հանդիպում չինական բանակի զորամասերի կողմից, քան յերբեվիցե յեղել է ամբողջ պատերազմի ըն-

թացքում Սկսելով իրենց հարձակման
նախապատրաստումը և Սյուչժոուի գրա-
վումից անմիջապես հետո ձեռնարկած հար-
ձակումը, այսինքն 1938 թ. մայիսի 19-ից
ճապոնացիները մինչև օրս վերջին յեր-
կու ամիսների ընթացքում անցել են միայն
մոտ 300 կիլոմետր: Այդպիսով ուրեմն
կարողացել են հարձակման այնպիսի տեմ-
պի հասնել, որ վերջին հաշվով կազմում
է օրական ոչ ավելի, քան 5 կիլոմետր:
Չինական հերոսական ավիացիայի կողմից
համարյա ամեն օր այդ ուղղությամբ ճա-
պոնացիների միակ կոմունիկացիայի
Ցանցգի գծի վրա կատարվող հարձակում-
ները մեծ կորուստներ են պատճառում ճա-
պոնացիներին: Ճապոնական խորտակված
տասնյակ նավեր և տրանսպորտներ ճապո-
նական ոչնչացրած տասնյակ ինքնաթիռ-
ներ, չխոսելով արդեն ճապոնական զորքե-
րի մարդկային կազմի կորուստների մա-
սին,— հեշտ հաղթություն չեն նախագու-
շակում ճապոնացիներին՝ Հանկոուն գրա-
վելու նրանց փորձերում: Չինական զին-
ված ուժերի գեներալիսիմուս (գերագա-
րապետ) Չան Կայ-շին հայտարարել է, որ
չինական բանակը պատրաստ է պաշտպա-



նելու Հանկոուի պլացդարմը ընդհուպ
մինչև այդ ուղղության վրա ճապոնական
բանակում գլխավոր հրամանատարը տա-
լու: Չինական բանակը լի յէ վճռականու-
թյամբ կռվելու ինտերվենտների ուժերի
դեմ, լի յէ ագրեսորների դեմ հաղթանակ
տանելու վստահությամբ:

Պատերազմի մի տարվա արդյունքն այն
է, որ չնայած ճապոնացիները չինական
զգալի տերիտորիա յեն գրավել, բայց քա-
ղաքական տեսակետից հաղթողը հանդի-
սանում է Չինաստանը: Նրա ներքին դրու-
թյունն օր ավուր ամրանում է: Չինական
կառավարությունն ամեն միջոց ձեռք է
առնում իր պաշտպանական արդյունաբերու-
թյան շինարարության համար: Յերկրի
տնտեսական ներքին ռեսուրսները հաջողու-
թյամբ ռեալիզացիայի յեն յենթարկվում
արտասահմանում սպառազինության գնում
ներ կատարելու հնարավորություն ձեռք
բերելու համար: Չինական կառավարու-
թյունն այս խնդիրները հաղթահարում է
միանգամայն բավարար կերպով: Դրան
խիստ նպաստում են յերկրի ներսում ու
արտասահմանում չին հայրենասերների
կամավոր նվիրատվությունները: Պատերազ-

մի մեկ տարվա ընթացքում չինական բանակը կարողացավ ձեռք բերել իր համար նոր տեսակի զորքեր, ինչպես՝ ավիացիա, հրետանի և մոտոմեքենայացված զորքեր, որոնք կանգնած են ժամանակակից տեխնիկայի մակարդակի վրա: Զգալիորեն բարելավվել է հետևակի սպառազինությունը, որը հարստացել է ժամանակակից հրացաններով ու գնդացիրներով: Տեղաշարժեր կան նաև հակաօդային պաշտպանության կազմակերպման գործում. հանդես են յեկել զենիթային հրետանի, զենիթային գնդացիրներ և կարգավորվում է ՀՕՊ-ի ծառայությունը:

Չինաստանը մեծագույն հաջողություններ է ձեռք բերել ազգային միասնական հակաճապոնական ֆրոնտի հիման վրա չին ժողովրդի հիմնական մեծամասնությունը քաղաքականապես համախմբելու և միացնելու գործում:

Չինաստանի Կոմունիստական կուսակցությունը դեռևս 1932 թվին դիմելով չինական ժողովրդին ու Գոմինդանի կուսակցությանը կոչ արեց միասնական ժողովրդական ճակատ ստեղծելու անհրաժեշտության մասին ընդդեմ ճապոնական ագրեսորի,



որը զավթել է չինական տերիտորիաները Մանջուրիայում: Այդ կոչը լայն արձագանք գտավ Չինաստանի հայրենասիրաբար տրամադրված մասսաների մեջ: Կոմկուսի հետագա տևողական գործողությունները այդ ուղղությամբ յեղել են.— քաղաքացիական պատերազմը դադարեցնելու պահանջը. չինական Կարմիր բանակը հակաճապոնական բանակի ավանգարդ հայտարարելը. Չան-Կայ-շիի ու Չժան Սյուե-լյանի զորքերի միջև ծագած Սյանի կոնֆլիկտի աներկիմաստ միջամտություն ցույց տալը, միջամտությունը, որը կասեցրեց քաղաքացիական նոր պատերազմի բռնկումը: Ճապոնական իմպերիալիստների զավթողական ակտերի դեմ ուղղված խիստ բողոքները. վերջապես համաձայնության պայմանների առաջարկումը Գոմինդանին, համաձայնություն, որի մեջ կոմկուսը մաքսիմում զիջումներ էր անում միայն թե ստեղծվեր չին ժողովրդի ազգային քաղաքական միասնությունը,— այդ բոլորն առաջացրեց Չինաստանի ժողովրդական մասսաների սերն ու հարգանքը դեպի կոմկուսը:

1937 թվի սեպտեմբերին հակաճապոնա-

կան պատերազմի սկզբից չինական ժողովրդի յերկար սպասած այդ համաձայնությունը կնքվեց Կոմկուսի ու Գոմինդանի միջև: Համաձայնությունը կնքվելուց հետո կոմկուսն յեռանդուն կերպով կատարում է իր հանձն առած պարտավորությունները: Շանսիի, Հանսուի, և Նինսյայի նահանգների խորհրդային շրջանները վերանվանվեցին Չինաստանի հատուկ շրջան, յենթարկվելով կենտրոնական կառավարությանը: Չինական Կարմիր Բանակը վերակազմվեց, դարձավ ժողովրդական հեղափոխական 8-րդ բանակ, մտնելով կենտրոնական կառավարության զորքի կազմի մեջ:

Իր հանձն առած մյուս պարտավորությունները կատարելու հետ միաժամանակ կոմունիստական կուսակցությունն արդեն լեգալ կերպով սկսեց Չինաստանի ժողովրդական լայն մասսաների մոբիլիզացիան ճապոնական հափշտակիչների հարձակման դեմ հակահարված կազմակերպելու համար: Կոմկուսի հրատարակությունները — ամենօրյա լրագիր «Սինխուժիբաո»-ն, շաբաթական ժուռնալ «Հոֆանը» և մյուսները — բազմաթիվ օրինակներով և



հսկայական արագությամբ վաճառվում, տարածվում են ամբողջ Չինաստանում: Կուսակցության ղեկավարներ ընկ. ընկ. Մաո-Ցզեդունը, Չժու Դեն և Պենդեխուայը դիմեցին չինժողովրդին, կոչ անելով կրծքով պաշտպանել իրենց հայրենիքը:

Կոմկուսը չին ժողովրդին դիմեց վոչ միայն ջերմագին կոչեր անելով ագրեսորների դեմ կռիվ մղելու մասին, այլև պայքար կազմակերպելու և միասնական ճակատը ներքեվից կիրառելու հոյակապ օրինակներ ցույց տվեց:

Այդ օրինակներն են հանդիսանում նրա կազմակերպած և ղեկավարած ժողովրդական հեղափոխական 8-րդ բանակը և պարտիզանական շարժումը: Շանսիի նահանգի լեռներում՝, Պինինկուանի լեռնանցքի մոտ և Նին-ույի մոտ տարած իր առաջին հաղթանակներով 8-րդ բանակը հսկայական ժողովրդականություն ու փառք վաստակեց չինական ժողովրդի և աշխարհի աշխատավոր մասսաների մեջ: Այդ հաղթանակները ջերմորեն քննարկվում եյին Չինաստանի ավելի քան 200 լրագրերում: Յուրաքանչյուր հրատարակություն, անկախ նրա քաղաքական ուղ-

ղությունից, իր պարտքն էր համարում առնվազը նշել 8-րդ բանակի գործողությունները և կոմկուսի դերն ազատագրական պատերազմում: Իսկ չինական լրագրերի հիմնական մեծամասնությունը կոչ էր անում չինական ժողովրդին՝ ուսումնասիրել 8-րդ բանակի գործողությունների մեթոդները: Այդ անմիջական արձագանք գտավ ամբողջ յերկրում:

8-րդ բանակի հրամանատարության և նրա Հանկոույի ու մյուս քաղաքների ներկայացուցչությունների հասցեյով սկսեցին տասնյակ հազարավոր դիմումներ ստացվել չինական հայրենասերներից, վորոնցով նրանք խնդրում են 8-րդ բանակի շարքերն ընդունել իրենց: Կորպուսների և բանակների հրամանատարները, դիվիզիաների հրամանատարները խնդրում են դրականություն և 8-րդ բանակի ներկայացուցիչներ ուղարկել՝ հրամկազմի հետ պարտիզանական գործողություններ վարելու փորձի ուսումնասիրության պարապմունքներ կազմակերպելու համար: Ուխանում և Հանկոույում՝ դպրոցներում և ակումբներում կանոնավոր կերպով դասախոսություններ են կարդացվում պարտիզանա-



կան պատերազմի մասին: 8-րդ բանակի դասախոսները հսկայական ժողովրդականություն են վայելում: 8-րդ բանակի նըշանը, նրա կրողին յերաշխավորում է լավ դիմավորում Չինաստանի ամեն մի քաղաքում և գյուղում:

Յան-ան (Չինաստանի հատուկ շրջանի մայրաքաղաքը) ժամանած չինական ժողովրդականացած փիլիսոփա Լյան Սինմինը հայտարարեց. «Չինաստանի ամբողջ յերիտասարդության սիրտը ուղղված են դեպի հյուսիս- արևմուտք»:

Չինական կոմկուսի և 8-րդ բանակի լայն կերպով աճող ժողովրդականությունը միասնական ժողովրդական բանակի անխախտության յերաշխիքն է: Այդ փաստով չինական ժողովուրդը ցուցադրում է իր կամքն ու ցանկությունը՝ պատերազմը շարունակելու մինչև ճապոնական հափշտակիչների դեմ լիակատար հաղթանակ տանելը:

Չափազանց մեծ է կոմկուսի դերը զինված ուժերի շինարարության Չինաստանի և ճապոնական իմպերիալիզմի դեմ նրա զինված պայքարը կազմակերպելու գործում:

8-րդ բանակն աճել- դարձել է չինական
ժողովրդի հսկայական կազմակերպիչ ու
պատերազմական հզոր շարժում ծավալելու
գործում: Բացի դրանից հակառակորդի
թևերն ու թիկունքը, շրջանցումները, նրա
տակտիկան, ճապոնացիների գործողու-
թյունների թույլ տեղերի օգտագործումը,
և գլխավորը՝ նրա հարձակողական գոր-
ծողությունները ապացուցեցին, վոր այս
բոլորը հանդիսանում է ճապոնիայի դեմ
պատերազմ մղելու լավագույն յեղանակը:
8-րդ բանակի քաղաշխատանքի փորձի
հիման վրա՝ ամբողջ չինական բանակում,
կոմկուսի առաջարկությամբ, մտց-
վեցին քաղբաժինները: Նրանց կազմա-
կերպումն ապահովեց չինական բանակի
մարտունակության աճումը և նրա քաղա-
քական բարոյական կայունությունը:
Սակայն միասնական ազգային հակաճա-
պոնական Ֆրոնտը Չինաստանում ունի վոչ
միայն իր կողմնակիցները, վորպիսին հան-
դիսանում են չինական ժողովրդի ճնշող
մեծամասնությունը, այլև իր հակառա-
կորդները: Գոյություն ունի Գոմինդան
կուսակցության անդամների մի խումբ,
գոյություն ունեն Չինաստանի հեռավոր



նահանգների բնակչության խմբեր, վորոնք
դեռևս չեն հասկանում, թե միասնական
ճակատն ինչ նշանակություն ունի չին ժո-
ղովրդի ճապոնական իմպերիալիզմի դեմ
կատարվող պայքարի համար: Դեռևս մար-
դիկ կան, վորոնք վախենում են միասնա-
կան ճակատի հաջողությունից, յելնելով
իրենց անձնական շահամոլական նկատա-
ռումներից: Չնայած Չինաստանի ժողովր-
դական հիմնական մասսաների քաղաքական
միաձուլությանը, յերկրում կան և ճապո-
նասեր տարրեր, վորոնց համար չինական
ժողովրդի հաղթությունը ցանկալի չէ: Այդ
խմբի ամենից ավելի ցայտուն ներկայա-
ցուցիչներն են հանդիսանում չինական ժո-
ղովրդի վոխերիմ թշնամիները— տրոց-
կիստները:
Միասնական ճակատի մասին համաձայ-
նություն կնքվելուց հետո, տրոցկիստները
փրփուրը բերաններին միանգամից սկսեցին
վարկաբեկել այն, փորձելով բացահայտո-
րեն վիժեցնել չինական ժողովրդի այդ մե-
ծագույն նվաճումը: Տեսնելով, վոր միաս-
նությունը վիժեցնում է նրանց ուղղակի
փորձերը ու ջախջախվում են չինական ժողո-
վրդի կամքի հանդեպ, տրոցկիստները

դուրս են բերում պրովոկացիոն իրենց «միասնական» ճակատի լոզունգը, փորձելով խաղալ աջ գոմինդանականների տրամադրությունների վրա:

«Երկրում պետք է լինի մեկ կառավարություն, մեկ կուսակցություն, մեկ բանակ և մեկ առաջնորդ: Այդ կառավարությունը պետք է լինել միայն գոմինդանական, կուսակցությունը— Գոմինդան, բանակը—գոմինդանական և առաջնորդը—Չան Կայ-շին. մնացած բոլորը պետք է լիկվիդացիայի ենթարկվեն»: Այդ լոզունգով հաշվի յե առնված վախեցնել Գոմինդանի անդամներին. ժողովրդի մեջ կոմկուսի աճող ժողովրդականությամբ և աներկիմաստ կերպով կոչ են անում լիկվիդացիայի ենթարկել Չինաստանի Հատուկ շրջանի կառավարությունը, կոմկուսը և 8-րդ բանակը: Կոմկուսը մերկացրեց չին ժողովրդի համար այդ լոզունգի դավաճանական էությունը և տրոցկիստները նորից ջարդվեցին:

Այն ժամանակ տրոցկիստներն առաջադրում են նոր պրովոկացիոն լոզունգ «կորչեն բոլոր իմպերիալիստները՝ Չինաստանում», հակադրելով այն «կորչի ճապոնական իմպերիալիզմը» լոզունգին: Տրոց-



կիստներն այդ լոզունգով ձգտում են ջլատել հակաճապոնական դիմադրության ուժերը և Չինաստանը մեկուսացնել արտաքին աշխարհից:

Տրոցկիստները միաժամանակ պղպղալից վայնասուն էին բարձրացրել, որ իբր թե, կոմկուսն միասնական ազգային ճակատ ստեղծելով և Գոմինդանի հետ համաձայնություն կնքելով վաճառում է պրոլետարիատի շահերը: Այդ բոլոր պրովոկացիաների նպատակն է՝ վիժեցնել միասնական ազգային հակաճապոնական ճակատի հիմնական օղակը— կոմկուսի համաձայնությունը Գոմինդանի հետ: Չինական «Իարո» լրագրի հայտարարության համաձայն տրոցկիստները «ճապոնական հետախուզական օրգանների վարձկաններն են, հանդիսանում և գործում են 1) որպես ճապոնական լրտեսներ, 2) Չինաստանի ազգային միասնական ճակատը քայքայող ճապոնական գործակալներ, 3) լուրեր տարածողներ և թիկունքը քայքայողներ և 4) որպես՝ հակաճապոնական տարրերի սպանության գործակալներ և դավաճանական աշխատանքի համար թիկունքում դաշանի օրգաններ արմատավորողներ:

Տրոցկիստական պարագլուխ Ծուան Գունդուի մերկացումը, որն աշխատում էր որպես Գուանսիի նահանգական կառավարության քարտուղար և որն ապստամբություն բարձրացրեց չինական կենտրոնական կառավարության դեմ՝ Գուանսիի զորքերը ռազմաճակատ ուղարկելու կապակցությամբ. տրոցկիստական շայկայի մյուս պարագլուխ՝ Զժան Մու-տաոյի մերկացումը, որը ճապոնական հետախուզական օրգանի միջոցներով հակահեղափոխական-լրտեսական կազմակերպություն էր հիմնել Շանսիի նահանգում — նմանապես և մի շարք այլ փաստեր լիովին հաստատում են չինական «Իբաո» լրագրի այդ հայտարարությունը: Չինաստանում խրամատաված տրոցկիստական բանդիտների դեմ անողոք պայքար մղելը՝ ճապոնական իմպերիալիստների դեմ չինական ժողովրդի հաղթանակի պայմանն է:

Այս տարվա հուլիսի 6-ին տեղի ունեցավ Չինաստանի ազգային-քաղաքական խորհրդի բացումը: Ազգային-քաղաքական խորհրդի կոմկուսի ներկայացուցիչները «Սինխուաժիբաո» լրագրում հրապարակեցին չին ժողովրդին ուղղված մի նամակ,



որի մեջ հայտարարում են,— «Ազատագրական պատերազմի ժամանակ ազգային-քաղաքական խորհուրդ ստեղծելը ցույց է տալիս, որ Չինաստանում քաղաքական կյանքն առաջ է գնում դեպի դեմոկրատիան և որ կուսակցությունների ու ժողովրդի միասնական ճակատը ավելի ու ավելի յե զարգանում: Թեպետ և ըստ ստեղծման մեթոդի և ըստ իր կազմի խորհուրդը դեռևս ժողովրդի ներկայացուցիչների բացարձակ օրգանը չի հանդիսանում, սակայն թշնամուն դիմադրություն ցույց տալու համար բոլոր ուժերի համախմբման գործում նրա հեղինակությունը և ֆունկցիաները ցույց են տալիս, որ Չինաստանի քաղաքական կյանքն ավելի ու ավելի էֆեկտիվ կերպով զարգանում է դեպի դեմոկրատիան»: ՏԱՍՍ-ի թղթակցի հետ ունեցած զրույցի ժամանակ Չինաստանի ռազմական խորհրդի նախագահ Չան Կայ-շին հետևյալ գնահատականը տվեց ազգային-քաղաքական խորհրդին. «Ազգային-քաղաքական խորհուրդը կազմակերպելու նպատակն է ի մի հավաքել չինական ժողովրդի զանազան խավերը ներկայացնող լավագույն և տաղանդավոր մարդկանց և այդ

ուժն ու գիտակցությունն ուղղել ազատագրական պատերազմի և յերկրի շինարարության հիմնական խնդիրների լուծմանը»:

Այդպիսի քաղաքական փորձի աշխատանքը չափազանց մեծ նշանակություն ունի չինական բոլոր ուժերը՝ արտաքին թշնամիների— ճապոնական իմպերիալիստների դեմ և ներքին թշնամիների— տրոցկիստների ու ճապոնասիրական տարրերի դեմ միացնելու տեսակետից:

Նրա վորոշումների հիման վրա չինական հայրենասերներն ել ավելի մեծ յեռանդով ձեռնամուխ կլինեն հակահարված կազմակերպելու և իրենց յերկիրն ինտերվենտների ձեռից ազատելու գործում:

Չինական բազմամիլիոն ժողովուրդը, տնտեսական, տերիտորիալ և մարդկային հսկայական ռեսուրսներ ունենալով կկարողանա ջարդ ու փշուր անել ճապոնական ագրեսորների ուժերը: Դրա գրավականն ու անխախտ պայմանն է հանդիսանում չինական ժողովրդի միասնությունն ու նրա հիմնական ողակի— Չինաստանի Կոմունիստական կուսակցության և Գոմինդանի համագործակցության ընդլայնումն ու ամրապնդումը:



Ա. ՊՈԼԻԿԱՐՊՈՎ

# ԻՆՉ Ե ԿԱՏԱՐՎՈՒՄ ԻՏԱԼԻԱՅՈՒՄ

## ՖԱՇԻՍՏԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԿՐԱԽԸ

Վերջին յերեք տարիներում իտալական եկոնոմիկայում տիրապետում են չորս եյական գործոններ.—պատերազմ Հաբեշստանի դեմ, սպառազինումները, ինտերվենցիան Իսպանիայում և սուր կերպով և արտահայտված միահեծանության տենդենցը:

Հաբեշստանի ավանտյուրիայի, Իսպանիայում կատարած ինտերվենցիայի և հսկայական սպառազինումների ռազմական ծախսերի հետևանքով 1936-37 թ. թ. իտալական բյուջեյի պակասորդը, ֆրանսիական «Եր-Նուվել» լրագրի (19 հունիսի 38 թ.) տվյալներով, հասել է ռեկորդային թվի—31 միլիարդ լիրայի[1]):

---

1) 100 լիրան =27 ռուբ. 90 կոպ.:

Ինչպես է ծածկվում այդ պակասորդը: Իտալական ֆաշիզմը դրա համար օգտագործում է յերեք աղբյուր.

1. Յերկարաժամկետ փոխառություն, վորը հարկադրաբար տարածվում է բնակչության մեջ:

2. Կարճաժամկետ փոխառություն (պետական պարտքը՝ ըստ ներքին փոխառությունների՝ 1929 թվին կազմում եր 87 միլիոն լիրա, իսկ 1937 թվին ավելանալով հասել է 122 միլիոն լիրայի):

3. Ինֆլյացիա—(գերալցում) վոսկու պաշարի գերազնահատումը 1649 միլիոն լիրայով, թղթադրամների բաց թողումը—1350 միլիոն լիրայի:

Բացի դրանից պակասորդը ծածկվում է տարբերկրյա արժեթղթերի և իտալական այն արժեթղթերի վաճառքից ստացվող յեկամուտներով, վոր բաց է թողնված արտասահմանում 2807 միլիոն լիրա կազմող գումարի չափով:

Չնայած իտալական ֆաշիստական կառավարության ինֆլյացիան և սպեկուլյատիվ տենդը նվազեցնելու փորձերին՝ նա ստիպված է անընդհատ ավելացնել թղթադրամ-



ների բաց թողումը և հենց դրանով են քայքայել ֆինանսները, քանի վոր Իտալիան չունի այն վալյուտան, վորն անհրաժեշտ է անընդհատ ավելացող թղթադրամային շրջանառությունը յերաշխավորելու համար: Վոսկու պաշարները դուրս են քաշված պատերազմի համար: Դրանք 1928 թվի համեմատությամբ պակասել են 80 տոկոսով:

Վերջերս պառլամենտում հանդես յեկած իտալական ֆինանսների մինիստրը հայտարարում եր, վոր ավարտվող ֆինանսական տարվա բյուջեն կամփոփվի իբր թե միայն 12 միլիարդ լիրա պակասորդով:

Բայց իրոք 1937—38 թ. բյուջեյի պակասորդը, ֆրանսիական մամուլի տվյալներով հասնում է հսկայական գումարի՝ 40 միլիարդ լիրայի:

Իտալական եկոնոմիկան կատաստրոֆիկ դրության մեջ է գտնվում: Բավական է ասել, վոր իտալական ընդհանուր պետական պարտքը, վորը 1930 թվին կազմում եր 89 միլիարդ լիրա, 1937 թվին արդեն աճել-հասել է հսկայական գումարի—200 միլիարդի:

Հաբեշստանի ավանտյուրան Իտալիայի վրա նստեց, ֆաշիստական «Պոպոլո դի Ռո-

մայի» տվյալներով, 30 միլիարդ լիրա, առանց սպասվող արդյունքները տալու:

Շվեյցարական «Նոյե ցյուրխեր ցեյտունգ» լրագիրը հաստատում է, որ Հաբեշստանի խաղաղեցման և յուրացման վրա կատարվող ծախսերը, 250 հազարանոց իտալական օկուպացիոն բանակ պահելու և հաբեշական պարտիզանական ջոկատների դեմ կռվելու համար կատարվող ծախսերն ամենևին չեն կրճատվել, այլ ավելի ևս շատացել են:

Հսկայական ծախսեր պահանջեց Իսպանիայում կատարվող ինտերվենցիան: Իսպանիայի ռազմաճակատներում 150 հազարանոց իտալական բանակ պահելը և գեներալ Ֆրանկոյին անընդհատ ռազմական հանդերձանք, ինքնաթիռներ, հրետանի և ռազմական այլ նյութեր մատակարարելը Իտալիայի վրա արդեն 8 միլիարդ լիրա յե նստել:

Իտալիան ունի արտաքին առևտրի դեֆիցիտային բալանս: 1936 թվին այդ դեֆիցիտը կազմում էր 5,6 միլիարդ լիրա, 1937 թվին 6 միլիարդ լիրայից ավելի: Ֆաշիստական Իտալիայի իր արտահանությունն ավելացնելու փորձերը շարունակ ձախողմամբ են վերջանում: Հնարավորություն չունենա-



լով իր հսկայական պարտքերը վճարելու, Իտալիան իր մի քանի վարկատուներին հարկադրում է պարտքի դիմաց ապրանքներ վերցնել: Օտարերկրյա մի շարք ֆերմաներ, Իտալիայից պարտքերն ստանալու համար հույսը կորցնելով, մերժում են նրան հետագայում վարկ տրամադրել: Իտալիայի արտաքին առևտուրը 1938 թվի միայն վերջին յերեք ամիսներում ունի մեկ միլիարդ լիրայից ավելի պակասորդ:

Բանն այն տեղն է հասել, որ չնայած «մեծ պատերազմի» կատաղի նախապատրաստությանը, իտալական մի շարք գործարաններ կանգ են առել հումքի սուր պակասության պատճառով:

«Եր Նուվելի» հունիսի 19-ի համարում զետեղված տվյալներով՝ Իտալիայում ալյումինի արտադրությունը 1937 թ. օգոստոսի ինդեկսում նշված 882-ից 1938 թ. հունվարին իջել, հասել է 573-ի, պղնձի արտադրությունը 1937 թ. հուլիսի ինդեկսում նշված 242-ից 1938 թ. հունվարին իջել հասել 160-ի, ավտոմոբիլների արտադրությունը—1937 թ. հուլիսին նշված 194-ից 1938 թ. հունվարին իջել հասել է 168-ի: Իզոտտա Ֆրասկինիի, Կապրոնիի, Բրեդայի

ավտոմոբիլային և ինքնաթիռային շինարա-
րության գործարանները 1938 թվի սկզբին
արձակեցին հազարավոր բանվորներ: Միլա-
նի Ալֆա-Ռոմեոյի հռչակավոր գործարան-
ների ցեխերի մի մասն աշխատում է շաբա-
թական 3 օր միայն: Սեստոյի «Մարելլի»
գործարանները հունվարին աշխատել են մի-
այն 9 օր, ապրիլին—12 օր: Զախողման
հանդիպեցին իտալական ֆաշիզմի բոլոր
այն ջանքերը, վորոնց նպատակն է՝ կանգ-
նել միահեծանության ուղու վրա, այսինքն
յերկրի բոլոր պահանջները սեփական
արտադրությամբ ծածկելու ուղու վրա:
Դրա համար անհրաժեշտ ռեսուրսներն Իտա-
լիան չունի: Իտալիան տարեկան սպառում է
մինչև 12 միլլիոն տոնն ածուխ: Բուն Իտա-
լիայում արդյունահանվում է ավելի քիչ,
քան մեկ միլլիոն վատորակ ածուխ: Իտա-
լիան սպառում է 2,5 միլլիոն տոնն նավթ,
իսկ արդյունահանվում է 20 հազար տոննից
պակաս: Իտալիան մեծ կախում ունի արտա
սահմանից: Նա ստիպված է ներմուծել յեր-
կաթի և սպառվող ածուխի 85 տոկոսը,
յերկաթի և պողպատի՝ 65 տոկոսը, նավթի՝
90 տոկոսը, բամբակի՝ 100 տոկոսը և բըր-
դի՝ 80 տոկոսը, առանց վորոնց իտալական



արդյունաբերությունը չի կարող գոյու-
թյուն ունենալ: Ֆաշիստական Իտալիան,
վորը մի շարք տարիների ընթացքում պար-
ծենկոտ, բայց անհաջող «պայքարում է
հացահատիկի համար» ի վիճակի չէ յերկի-
րը կերակրելու վոչ իր հացով, վոչ մսով,
վոչ էլ մինչև իսկ մակարոնով: 1937 թ.
բերքն սպառվել է առաջին իսկ ամիսների
ընթացքում: Իտալիան ստիպված յեղավ
մեծ քանակությամբ հաց ներմուծել: 1938
թվականին Իտալիան ստիպված կլինի ներ-
մուծել վոչ պակաս, քան 25 միլլիոն ցենտ-
ներ ցորեն:

Իտալիայի արտաքին առևտրի 50 տոկո-
սից ավելին տարվում է Ջիբրալտարի նե-
ղուցով: Միջերկրական ծովի յելքերի փա-
կումն Իտալիային ծանր դրության մեջ
կդներ: Ռազմական ավանտյուրաների վրա
կատարվող ծախսերը ծածկելու և տնտեսա-
կան դժվարությունները մեղմացնելու միջոց
ներ գտնելու համար իտալական ֆաշիզմը
մաշում էր Լոնդոնի Սիտիի շեմքը, ձգտե-
լով 30 միլլիոն ֆունտ ստերլինգի փոխառու-
թյուն ստանալ:

Այս է պատճառներից մեկը, վորը Իտա-
լիային հարկադրում է վոչ մի ժամանակ

Անգլիայի հետ հարաբերությունները չորել:

«Իտալական էկոնոմիկայի ապագան,—գրում է Բյուլլետեն Կոտիդեյնը» չափազանց մռայլ է: Իտալական իշխանությունները ամեն տեսակ կոմբինացիաներով փորձում են հետաձգել վերջնական անանկությունը: Սակայն հայտնի չէ, թե ինչ կերպ կհաջողվի, այնուամենայնիվ խուսափել դրանից»:

Ֆրանսիական աջ ժուռնալ «Երալ Նուվել»-ը հուլիսի 2-ին զետեղում է ֆրանսիական հայտնի տնտեսագետ Միշել Վալդայի «Իտալական էկոնոմիկայի ճգնաժամը» վերտառությամբ հոդվածը, վորի մեջ նկարագըրված է իտալական տնտեսության կատաստրոֆիկ դրությունը:

«Ներկայումս Ֆաշիստական Իտալիայում դրություն ունեն յերկու տեսակի ֆինանսական տնտեսական լուրջ դժվարություններ.

1) Ներքին կարգի դժվարություններ, վորոնք կախված են բյուջետային պակասուրդից, հարկերն ավելացնելուց, քողարկված ինֆլացիայից, փոխառությունների հնարավորությունների սպառումից, հարկային ճընշումից, արտադրության և սպառման կըրճատումից;



2) Միջազգային կարգի դժվարություններ, վորոնք կախված են առևտրական բալանսի հսկայական պակասորդից, վոսկու պաշարի դուրս տալուց, այս տարվա մառ բերքի պատճառով արտասահմանից հաց ներմուծելու անհրաժեշտությունից և սպառողինումներից: Այս դժվարությունները կարող են լուծում ստանալ միայն ստերլինգյա վարկ ստանալով կամ վոսկու, վալյուտայի և այնպիսի ապրանքների ներմուծմամբ, վոր Իտալիան չունի»: Յեվ հետո, «Առևտրական և վալյուտային փոխանակության մինիստրը բոլոր միջոցներն օգտագործեց, վորպեսզի ավելացնի ներմուծումը և սատակացնի արտահանությունը: Բայց դրանից վոչինչ չստացվեց, ռազմական արդյունաբերության համար հումք ներմուծելու, անբերիության պակասորդը, արդյունաբերական ապրանքների անընդհատ աճող գները ծածկելու անհրաժեշտության պատճառով: Իտալիան ստիպված է ներմուծել 500 հազար տոնն հացահատիկ և ուրիշ պարենամթերքներ: Այս տարվա հսկայական անբերիությունը (80 միլիոն հեկտար կվինտալի փոխարեն հավաքված է 60 միլիոն կվինտալ—անցյալ տարվա համեմատությամբ 20 մի-

գիոն պակաս և այն էլ վատ վորակի) իտա-
լական կառավարությունը փորձում է մեղ-
մացնել՝ հացին 20 տոկոս յեգիպտացորենի
և բակլայի ալյուրի խառնուրդ ավելացնե-
լով։ Թե՞ Իտալիայում ինչ աստիճան ծանր
է դրությունը ցույց է տալիս այն փաստը,
վոր 1914 թվի համաշխարհային պատերազ-
մի ժամանակ Իտալիայում յերբեք 10 տոկո-
սից ավելի խառնուրդ չեր ավելացվում հա-
ցին։ Այժմ շատ նահանգներում ավելացվում
է մինչև 30 տոկոս սուրրոգատներ։ Սակայն
այդ ալյուրի պակասությունն էլ կա։ Հացն
այն աստիճան վատ է, վոր նույնիսկ Ֆաշիս
տական լրագրերն էլ ստիպված են գրել այդ
մասին։ Վորպեսզի բնակչության աճող դժգո
հությունը դադարեցնի—վոստիկանությունն
ամեն որ ձերբակալում է աղացպաններին
և հացթուխներին։ Բայց դա չի փրկում
դրությունը։ Մինչև անգամ այդ անտանելի
հացն էլ չի բավականացնում։ Հարկավոր է
հաց գնել։ Դրա համար պահանջվում են
ապրանքներ, վալյուտա, վոսկի, վորոնք
բացակայում են։ 1920—21 թվին, յերբ
նույնպիսի վատ բերք յեղավ, ինչպես այս
տարի, չնայած հետպատերազմյան ժամա-
նակվա հսկայական դժվարություններին,



Իտալիան կարողացավ դուրս գալ ճգնաժա-
մից առանց խառնուրդների դիմելու, բայց
այն ժամանակ նա ուներ վոսկի, վարկեր և
արտահանության համար ապրանքներ։ Ի-
տալիայի 1938 թվի առաջին կեսի առևտրա
կան բալանսը հսկայական պակասորդ ունի
—հաց գնելու վոչինչ չկա։

## ԻՏԱԼԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ՀԱՐԿԱԴՐՎԱԾ Է ՀԱՏՈՒՑԵԼ ՖԱՇԻԶՄԻ ԱՎԱՆՏՅՈՒՐԱՅԻ ՀԱՄԱՐ

Իտալական Ֆաշիզմի ավանտյուրիստական
քաղաքականության և յերկրի ծանր տնտե-
սական դրության հետևանքները կապարի
պես ծանրացել են աշխատավոր մասսաների
ուսերին, առաջ բերելով նրանց զայրույթն
ու ատելությունը։

Իտալական ժողովուրդն հարկադրված է
հատուցել հաբեշական ավանտյուրիայի հա-
մար, Իսպանիայում կատարվող ինտերվեն-
ցիայի համար, հսկայական սպառազինում-
ների համար։

Իտալական Ֆաշիզմը փորձում է իր գան-
ձարանում բացված ծակերը փակել չլսված

չափերով հարկերը բարձրացնելով: 1938 թ. առաջին կեսին հարկը մասսայական սպառման առարկաների մեծամասնության վրա նորից ավելացվեց 100 տոկոսով: Շաքարի հարկը կազմում է շաքարի ինքնարժեքի 600 տոկոսը:

«Էր Նուվելի» հունիսի 19-ի համարում զետեղված տվյալներով հատավաճառ առևտրի ինդեքսը 1935 թ. հունվարին յեղել է 95,9, իսկ 1938 թ. հունվարին իջել է մինչև 72-ի:

Պաշտոնական տվյալներով, իտալական գյուղացիների գույքը՝ հարկերը չմուծելու պատճառով աճուրդով վաճառելու դեպքերի թիվը 1938 թ. յեղել է 4 հազար, իսկ 1937 թվին աճել է մինչև 18 հազարի:

Հարկերի ամբողջ ծանրությունը բնակչության աշխատավոր մասսաներն են կրում. վորովհետև կապիտալիստների վրա դրված հարկը վերջիններս անհապաղ շրջում են սպառողի վրա:

Մինչև անգամ ֆրանսիական ռեակցիոն լրագիր «Օրդր»-ը իտալո-ֆաշիստական հարկերը բնորոշում է վորպես «ավելի ես չափազանց, քան այն հարկերը, վորոնց ներքո առաջ հեծում եր բնակչությունը»:



1937 թվին հայտարարվեց 10 տոկոսանոց հարկ՝ ակցիոներական ընկերությունների վրա: Բայց տարվա ամփոփումը ցույց տվեց այդ ակցիոներական ընկերությունների չահույթների ավելացումը:

Հարկերն ավելացնելու և մասսայական սպառման առարկաների գները բարձրացնելու հետ միաժամանակ ֆաշիստական կառավարությունը լայն կերպով կիրառում է հարկադիր փոխառությունների սիստեմը: Իտալիայում բացի մյուս փոխառություններից, գոյություն ունի անշարժ սեփականության 5 տոկոսանոց հարկադիր փոխառություն: Իտալական ամեն մի գյուղացի, վոր ունի թեկուզ ամենափոքր կտոր հող, պարտավոր է բաժնեգրվել այդ փոխառությանը: Սակայն այդ փոխառության համար ամենաբնորոշն այն է, վոր դրա հետ միաժամանակ հայտարարվեց հատուկ հարկ սահմանվելու մասին՝ փոխառության տոկոսների վճարման համար:

Ժնևի «Ժուռնալ դե Նասյոն» թերթը գրում է.—«Անշարժ գույքից ստացվող յեկամուտների վրա դրված 15 տոկոսանոց հարկը, ամբողջ յերկրում կատարվող վոսկու հավաքումը և այլն-կարելի յե արդյոք

այդ բոլորից հետո վորևէ բան քամել աղ-
քատ ժողովրդից, վորն առանց այն էլ տա-
ռապում է անտանելի հարկի ծանրությու-
նից: Հարկավոր է հաշվի առնել, վոր անհրա-
ժեշտ է ծածկել արտակարգ ծախսերը (սպա-
ռազինումներ, Հաբեշստանի շահագործու-
մը, պատերազմն Իսպանիայում), բայց
արդեն մոբիլիզացիայի յեն յենթարկված և
զգալի չափով հյուծված են յերկրի բոլոր
արտակարգ ռեսուրսները»:

Իտալիայում հսկայական գործազրկու-
թյուն կա: «Լավորո Ֆաշիստա» լրագիրը
սովորական ցինիզմով վերջերս գրել եր,
վոր «հարկադիր հանգիստ ունեցող» շատ
բանվորներ չեն կարող շատով աշխատանք
ստանալու հույս ունենալ»: Վերջին ժամա-
նակներս Իտալիայի խոշորագույն արդյու-
նաբերական կենտրոններում բանվորների
մասսայական արձակումներ կատարվեցին:

Բանվորների մեծամասնությունն զբաղ-
ված է միջին հաշվով շաբաթական 20 ժամ
և ունի չնչին վաստակ: Վերջին յերկու տա-
րիները վորակյալ բանվորների աշխատա-
վարձն իջեցված է 44 տոկոսով:

Մինչև իսկ մասնագետներն էլ դժվարու-
թյամբ են ստանում որական 12 լիրա (մոտ



3 ռուբլի): Գործազուրկների հսկայական բա-
նակից միայն 12 տոկոսն է ստանում գռո-
շանոց նպաստ և այն էլ միայն յերեք ամ-
սվա տևողությամբ: Ծանր դրության մեջ
են գտնվում գյուղատնտեսական բանվորնե-
րը, վորոնք վաստակում են որական 5 լի-
րայից վոչ ավելի, մինչդեռ մեկ կիլոգրամ
հացն արժե 1,5 լիրա, շաքարը—7 լիրա,
սուրճը—40 լիրա, միսը—11—12 լիրա:
Դրությունը գյուղում ավելի վատ է: Ի-
տալական գյուղացիների կեսից ավելին հո-
ղազուրկ է և ստիպված է վարձակալության
և պարտքի ստրկական պայմանագրերով
կապվել կալվածատերերի ու վաշխառուների
հետ, կամ բատրակությամբ զբաղվել:

Գյուղացիական տնտեսությունների 2/3-ն
ունի գաճաճային հողամասեր, վորոնց տա-
րածությունը մի հեկտարից էլ պակաս է:
Գյուղացիները չնչասպառ են լինում անլուր
շահագործման լծի տակ և անթիվ հարկերի,
տուրքերի ու պարհակների ծանրության
տակ:

Իտալիայի գյուղատնտեսությունն ապրում
է ամենախորն անկումը: 1926 թվականից
սկսած անասունների ընդհանուր թիվը կըր-
ճատվել է 5,5 միլիոնով, այսինքն՝ մոտա-

վորպես 27 տոկոսով: Վոչխարների թիվը կրճատվել է մեկ միլիոնով, խոզերի թիվը — 1,5 միլիոնով: Ձիթապտղի ձեթի արտադրությունը 1913 թվի համեմատությամբ պակասել է 35 տոկոսով: Այս տարի սպասվում է շատ վատ բերք: Բացի նրանից, վոր գյուղացիությունը ցանքի տարածությունը կրճատել է, բերքն էլ վնասվել է յերաշտից ու ցրտից: Հացահատիկի բերքահավաքն այս տարի 60 միլիոն ցենտներից չի գերազանցի, մինչդեռ նույնիսկ ներկայիս քաղցած նորմաներով էլ բնակչության մատակարարման համար պահանջվում է տարեկան վոչ պակաս, քան 80 միլիոն ցենտներ ցորեն: Դրան պետք է ավելացնել հացի այն հսկայական քանակը, վոր պահանջվում է Հաբեշստանում և Իտալիայում պահվող օկուպացիոն բանակների մատակարարման համար, «Մեծ պատերազմի» նախապատրաստման համար: Իտալական գյուղացիությանը թույլատրվում է իր գոյությունը պահպանելու համար ոգտագործել որական վոչ ավելի քան 600 գրամ հացահատիկ: Մնացած բոլորը բռնագրավվում է կառավարության:

Իտալական գյուղացիությունը դատապարտված է դանդաղ սովամահության:



«Դեյլի Հերալդ»-ը հունիսի 17-ին հաղորդում է, վոր հացին՝ յեգիպտացորենի, կարտոֆիլի և բակլայի ալյուրի նոր 20 տոկոսի խառնուրդ ավելացնելու շնորհիվ այդ հացը դարձել է մի անուտելի բան: Այդ առաջացրել է բնակչության խիստ դժգոհությունը: Վորպես որինակ լրագիրը բերում է վերջերս տեղի ունեցած մի դեպք, թե ինչպես Ֆլորենցիայում մի իտալացի ձերբակալվեց այն բանի համար, վոր նա իրեն մատուցված «հացը» հատակի վրա նետելով, բացականչեց.—«Մինչև իսկ անասունն էլ կհրաժարվի նման հաց ուտելուց»:

Փարիզում լույս տեսնող իտալական հակաֆաշիստական «Ջուստիցիա է Լիբերտա» լրագիրը հրապարակում է Իտալիայից ստացված մի նամակ, վորտեղ ի միջի այլոց ասվում է.—«Հացը մեզ մոտ դարձել է մի անուտելի բան: Իզուր չէ, վոր մեզնում հեգնորեն ասում են, թե բավական է փորձել ուտելու մի կտոր «կայսերական» հաց, հասկանալու համար այն «բարիքները», վոր ֆաշիզմը տվել է իտալական ժողովրդին»: Դրա փոխարեն իտալական գյուղերում քաղցած և քայքայված գյուղացիությանը՝ վորպես մխիթարության տների ճակատներին

ու ցանկապատերի վրա խոշոր տառերով գծագրված է՝ ֆաշիստական մի լոզունգ՝ «Հավատա, հնազանդվիր, պայքարիր»:

Հունիսի սկզբին ֆրանսիական «Կորեսպոնդանս ինտերնացիոնալ» ժուռնալը զետեղել էր մի հոդված, վորի մեջ նկարագրված են իտալական ձեռնարկություններում գոյություն ունեցող աշխատանքի տաժանակրային պայմանները: Գործարանների ցեխերը միմյանցից բաժանված են յերկաթե վանդակներով: Յուրաքանչյուր բանվոր իր բլուզի վրա կրում է վահանակ, վրան նշանակված այն ցեխի համար, վորտեղ նա աշխատում է: Իր ցեխի սահմաններից դուրս գալն արգելվում է աշխատանքից հեռացնելու սպառնալիքով: Աշխատանքի ժամանակ խոսելու կամ ուտելու համար սպառնում է առաջին անգամ տուգանք, յերկրորդ անգամ հեռացում:

Միլանի «Իլ Սոլե» լրագիրը հունիսի 14-ին մատնանշում է, վոր Իտալիայում շարունակվում է բնակչության մասսաների խիստ աղքատացումը: Մասսայական սպառման ապրանքները գնորդի չեն հանդիպում: Տեքստիլ ապրանքների բնակչության գնողունակությունը շուկայում անցյալ տարվա



համեմատությամբ կրճատվել է 40 տոկոսով: Իտալական տեքստիլ արդյունաբերությունը, հումքի բացակայության պատճառով, սուր ճգնաժամ է ապրում:

## ԻՏԱԼԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ Է ՖԱՇԻԶՄԻ ԴԵՄ

Տնտեսական ամենախորը անկումը, բնակչության լայն մասսաների քայքայումն ու հուսահատությունը վերջին ժամանակներս առաջ են բերում բազմաթիվ ցույցեր՝ ուղղված ֆաշիստական ռեժիմի դեմ:

Ֆաշիստական հռչակավոր տեռորն ի վիճակի չէ խանգարելու այդ յելույթները: Անգլիական բուրժուական ժուռնալիստ Եդուարդ Եյլխոնը, վորը վերջերս է վերադարձել Իտալիայում կատարած ճանապարհորդությունից, «Նյուզ Քրոնիկլ»-ում հրապարակել է մի հոդված իտալական ժողովրդի թշվառ դրության մասին՝ այսպիսի վերնագրով.—«Յերկիր, վորտեղ մարդիկ կարող են միայն իրար ականջին քչփչալ»: Նա գրում է.—«Յես ուշադրությամբ ականջ եմ դրել, թե ինչ է խոսում իտալական ժողո-

վուրդը: Ինձ ասում էին ժողովրդական մասսաների ատելության և ինտելիգենցիայի ու գյուղացիության ամենախոր դժգոհության մասին ֆաշիստական ռեժիմի նկատմամբ, ինձ ասում էին ծառայողների և չինովնիկների հսկայական հուսախաբության մասին՝ ֆաշիզմի տնտեսական չիրագործության պլանների ձախողման և տնտեսական պարտության վերաբերյալ հաբեշական պատերազմում:

Ֆաշիստական մամուլի բարձրացրած թմբկահարության ձայթյունի միջից ավելի ու ավելի բարձր է հնչում իտալական յերիտասարդության և ուսանողության դժգոհության ու վրդովմունքի ձայնը՝ գոյություն ունեցող դրության վերաբերմամբ: Չնայած վոր շարունակ նրանց գլուխն են մտցնում այն միտքը, թե նրանք նախ և առաջ զինվորներ են, այնուամենայնիվ նրանց մեջ շատ ու շատ է այնպիսիների թիվը, վորոնք խիստ են տրամադրված ֆաշիստական ավանտյուրիստային քաղաքականության դեմ: Անցյալ տարի իտալական հետախուզությունը ձերբակալեց ավելի քան 100 յերիտասարդ: Նրանց մեծամասնության վերաբերմամբ դաժան դատավճիռ կայացվեց—10 տարուց ա-



վելի տաժանակրություն: Չնայած գոյություն ունեցող՝ հետամտության և լրտեսության, մատնության ու խուզարկումների սիստեմին, վորոնք լայն կերպով կիրառվում են ֆաշիստների կողմից, այնուամենայնիվ չի հաջողվում բոլոր հակաֆաշիստներին վորսալ ու վոչնչացնել: Նրանց թիվն անդադար աճում է: Բուն ֆաշիստական կազմակերպություններում աճում է դժգոհությունը Մուսոլինիի ներքին ու արտաքին քաղաքականությունից:

Այնուհետև Ելլիոտը գրում է, վոր «աղքատությունն Իտալիայում համատարած յերևույթ է: Ֆաշիստական շրջաններում գոյություն ունի այն համոզմունքը, վոր ներքին դրության այդպիսի պայմաններում Իտալիայի պատերազմը յեվրոպական վորևէ մեծ պետության դեմ՝ նշելու յե ֆաշիստական Իտալիայի ջախջախումն ու կործանումը: Մյուս կողմից, Մուսոլինին ու նրա ոգնականները սոսկալի վախենում են, վոր թեկուզ պատերազմ ել չլինի, միևնույն է, իտալական ժողովուրդը կտապալի ֆաշիստական իշխանությունը և գործն իր ձեռքը կվերցնի: Այդ նշելու յե ֆաշիզմի ջախջախումն ու մահը»:

Ֆրանսիական «Լյա Դեֆանս» լրագիրը հաղորդում է (11 ապրիլի 1938 թ.) վոր Պարմայում նորերս 500 կին՝ յերեխաները ձեռներին՝ բողոքի ցույց սարքեցին քաղցի դեմ և իրենց ամուսիններին Իսպանիա պատերազմ ուղարկելու դեմ: Յերբ վոստիկանությունն սկսեց ցրել ցույց, հուսահատության հասած կանանց միջից անեծքներ տեղացին ֆաշիզմի ու նրա պարագլուխների հասցեյին: Վոստիկանությունը ձերբակալեց մոտ 100 կին: «Եսպան» հանրապետական գործակալությունը հաղորդում է, վոր հունիսի յերկրորդ կեսում Միլանի փողոցներում և հասարակական վայրերում մի քանի որվա ընթացքում հայտաբերվեցին բազմաթիվ հակաֆաշիստական թռուցիկներ, վորոնց մեջ կոչ եր արված պայքարել Իսպանիայում կատարվող իտալական ինտերվենցիաների դեմ, հայտաբերվեցին և տների պատերին փակցրած մակագրություններ՝ հանրապետական Իսպանիայի հետ համերաշխ լինելու մասին և ֆաշիստական ռեժիմի տապալման անհրաժեշտության մասին, վորը Իսպանիային տանում է դեպի կործանում:

Քաղաքական տեռորը և մասսայական



ձերբակալություններն Իտալիայում վերջին ժամանակներս հսկայական չափերի յեն հասնում: «Մանչեստեր Գարդիան»-ը հաղորդում է, վոր ապրիլի 10-ից հետո անցած ժամանակամիջոցում Միլանում ձերբակալվել ու բանտերն են նետվել մի քանի հարյուր բանվորներ, ծառայողներ և ինտելիգենտներ: Ընդամենը վոչ մի մեղադրանք չի առաջադրված նրանց: Նրանց բանտ են նետել առանց դատարանի ու քննության, պարզապես լրտեսների ու մատնիչների չարախոսությունների հիման վրա: Բազմաթիվ ձերբակալություններ են կատարվել Բարի քաղաքում: Ձերբակալվել են վոչ միայն բանվորներն ու ինտելիգենտներ, այլ շատ մանր առևտրականներ ու գյուղացիներ: Ռեջիո Եմիլիո քաղաքում վերջին շաբաթներս ձերբակալվել է տեղական գործարանների ավելի քան 100 բանվոր, վորոնք մեղադրվում են սաբոտաժի համար:

Որերս իտալական լրագրերը հաղորդեցին, վոր Իտալիայի զանազան վայրերում, այդ թվում նաև Նեապոլում ու Դոմոդոսոլայում (իտալո—շվեյցարական սահմանի մոտ) կատարվեցին բազմաթիվ մարդկանց ձերբակալություններ, վորոնք փորձել եյին

անլեգալ կերպով փախչել ֆաշիստական Իտալիայից:

«Նուովո Ավանտի»-ն հունիսի 7-ին գրում է, թե Իտալիայում բանտերն այն աստիճան լեցուն են, վոր ամենուրեք բանտերի համար հարմարեցված են սովորական տներ: Ֆլորենցիայում նկատված է կրծքի յերեխա ունեցող կանանց ձերբակալության մի քանի դեպք: Տրապանիայում (Սիցիլիա) ձերբակալվել և 5 տարով Լիպարյան կղզիներն են ուղարկվել յերկու գործավորուհիներ—Պաոլա դե Նապոլին և Ռոզալիե Մաձարելան—այն մեղադրանքով, վոր նրանք քաղաքի պատի վրա գրել են.«Հաց ու աշխատանք ենք ուզում»: Իտալական ֆաշիստները կատաղում են անզոր չարությունից, վորովհետև չնայած զազանային տեռորին՝ հակաֆաշիստական շարժումը չի հաջողվում խեղդել: Վերջին ժամանակներս իտալական «Ովրա» կիրառում է այսպիսի կարգ.—բոլոր այն հակաֆաշիստները, վորոնք իր ժամանակին դատապարտվել են 5-10 տարվա տաժանակրության և նստել են ֆաշիստական բանտերում ու կրել են տանջանքներ, բանտարկության ժամկետը վերջանալուց հետո նորից ձերբակալվում և ուղարկվում



են տաժանակիր աշխատանքների: Այսպես վարվեցին փաստաբան Ումբերտո Տերաչինիի և բանվոր Ռանտոկայի հետ, վորոնք հիվանդ եյին տուբերկուլյոզով, այդպես վարվեցին բժիշկ Սկոչիմարոյի, փաստաբան Պերտինիի ու Ֆանչելլոյի հետ, ծառայող Սեկկիայի և ուրիշ շատերի հետ: Ֆաշիստական իշխանությունները վերջին ժամանակներս բազմաթիվ ձերբակալություններ կատարեցին Տուրինում, Ջենովայում, Բոլոնյայում, Վենետիկում, Միլանում բանվորների ու ինտելիգենցիայի մեջ: Բայց ֆաշիստական տեռորն ի վիճակի չէ խեղդելու հակաֆաշիստական հարաճուն շարժումը: Իտալական պրոլետարիատը՝ խոր ընդհատակում աշխատող հերոսական կոմկուսի ղեկավարությամբ ամկուն կերպով շարունակում է պայքարը հանուն իր շահերի, ընդդեմ ֆաշիստական ռազմական ավանտյուրաների, վորոնք քաղցի ու աղքատության են դատապարտում իտալական ժողովրդին, ընդդեմ հանրապետական Իսպանիայում կատարվող հանցավոր ֆաշիստական ինտերվենցիայի: Նա ժողովում ու կուտակում է իր ուժերը՝ նոր և վճռական մարտեր մղելու՝ ֆաշիզմի տապալման համար:

Պատ. խմբագիր՝ Դ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Պատ. խմբ. տեխնիկալ՝ ՀՐ. ՄԱՐԳԱՐՅԱՆ
Սրբագրիչ ՑՐ. ՄԱՐՈՒԹՅԱՆ



Գլավլիտի լիազոր՝ Ա.—4057
Ստորագրված է տպագրության
5 հոկտեմբերի, 1938 թ.
Պատվեր № 601: Տիրաժ՝ 6906:

---

«ԽՈՐՀ. ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏ. ՏՊԱՐԱՆ
ԵՐԵՎԱՆ

ՀԽՍՀ ԺԿԽ. Հրատարակչություն—
«Խորհրդային Հայաստան»

---

ԲԱՑՎԱԾ Է 1938 Թ.
բաժանորդագրությունը

## „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտպրոպագանդայի և ագիտացիայի բաժնի հրատարակությամբ

ԲԱԺԱՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . 6 ռուբ.
6 » . . 3 »
3 » . . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝ «Սոյուզպեչատ»-ի քաղաքային, շրջանային բյուրոներին և փոստի բաժանմունքներին: